LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

# ՅԱՌԱՋ

HARATCH

(Fondé en 1925) :-: R. C. Seine 376.286

Directeur et Propriétaire : SCH. MISSAKIAN
Rédaction et Administration
ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
17, Rue Damesme, PARIS (13e) (ԹՐԵՒԵՒԿԻ ՀԱՄԱՐ) Métro : TOLBIAC

Téléphone : COBelins 15 - 70
Chèque Postal Paris 1678-63

ՕՐԱԹԵՐԹ, ԱԶԳԱՅԻՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ

| ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ — | ՏԱՐԵԿԱՆ | ՎԵՑԱՄՍԵԱՅ | ԵՌԱՄՍԵԱՅ |
|---|---|---|---|
| Ֆրանսա եւ Գաղութներ | 150 ֆրանք | 75 ֆրանք | 40 ֆր. |
| Անգլիա եւ Իտալիա | 265 ֆրանք | 140 ֆրանք | |
| Ուրիշ երկիրներ | 215 ֆրանք | 110 ֆրանք | |

ԿԻՐԱԿԻ 7 ՅՈՒՆՈՒԱՐ
DIMANCHE 7 Janvier 1940

ԺԶ. ՏԱՐԻ — 16e Anné No. 4240 — Խմբագիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ — Գին 50 ՍԱՆԹԻՄ

ԵՐԵՔԻ ԽՕՍՔ

## ՖԻՐՈՒԶԵԱՆ ԹՌՉՈՒՆԻՆ ԿԱՅԾԸ

[illegible]

ԱՐԽԻՒՄԱՆ ԺԱՄԱՍ

## ԵՐԿՈՒ ՆԱԽԱՐԱՐՆԵՐ ՀՐԱԺԱՐԵՑԱՆ ԱՆԳԼԻՈՅ ՄԷՋ

[illegible]

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Բ. էջ)

## ԵՐԿՈՒ ՕՖԻՍՆԵՐՈՒՆ ՄԻԱՑՄԱՆ ՅՈՒՇԱԳԻՐԸ ՀԱՅ ԳԱՂՈՒԹԻ ԲԱՂՁԱՆՔՆԵՐՈՒ ՄԱՍԻՆ

[illegible]

150.000 [illegible]

(Մնացեալը յաջորդով)

TRIBUNE FRANCO-ARMÉNIENNE

# MESSAGE de NOEL

Fils de l'antique Haïastan, au seuil de cette année nouvelle, c'est avec émotion que je vous adresse mon affectueux salut — à tous : à ceux qui, bravant la rigueur du destin, sont demeurés sur la terre ancestrale, comme à ceux que l'exil a dispersés par le monde; mais qu'il me soit permis de réserver une amitié plus fraternelle encore à ceux qui, venus s'asseoir au foyer de la France, leur seconde patrie, renouent l'héroïque tradition de leurs aïeux et combattent sous nos étendards, soldats de l'éternelle Croisade, comme au temps de Léon V de Lusinian !

Pour lui donner son sens profond j'ai voulu que ce message vous parvint le jour même où vous célébrez la naissance divine de Celui qui vint sur la terre pour apporter aux hommes de bonne volonté l'Espoir et le Salut...

Arméniens, vous connaissez mes sentiments et savez que je m'évertue à les manifester par mes actes : si j'ai eu la joie de vous rendre quelques services, les émouvants témoignages de votre gratitude nous ont permis de nous rapprocher davantage, rendant plus ardente encore ma volonté de soutenir votre cause qui est celle de la Justice et de la Civilisation.

Si dévoué qu'ils puissent être, des efforts isolés ne sauraient avoir la puissance nécessaire à la réalisation des buts que je veux atteindre avec vous : obtenir de notre gouvernement,, pour les Arméniens résidant sur notre sol, un statut digne de la France, faire connaître et rayonner votre antique culture, rendre enfin, votre peuple à ses glorieux destins. Aussi ai-je pris l'initiative de fonder le « **COMITE FRANCO-ARMENIEN** » qui constituera un indispensable trait-d'union et sera l'efficace instrument de notre amitié séculaire.

Pour présider à notre action, un homme s'imposait : M. Louis **Marin,** député de Lorraine et ancien ministre, qui, depuis bientôt un demi siècle (depuis les massacres de 1895 !) a manifesté tant de fois son généreux dévouement à la cause arménienne et qui, répondant à mon appel, a bien voulu nous apporter le prestige de son nom et l'autorité de sa personne.

Autour de lui, notre Comité a réuni d'éminents Français, parmi lesquels je tiens à nommer : les généraux **Brécart, Dufieux** et **Niessel,** anciens membres du Conseil supérieur de la Guerre, **Andréa, Brémont**, **Chardigny, Chevalier, Clément-Grancourt;** l'Amiral **Mornet;** S. E. le Cardinal **Baudrillart,** de l'Académie Française; le Premier Président **Lescouve** et Maître **Wateau** membres du Conseil de l'Ordre de la Légion d'Honneur; MM. Abel **Bonnard,** Henry **Bordeaux** et Georges **Goyau,** de l'Académie Française; M. Georges **Picot,** Ambassadeur de France; les Sénateurs **Gautherot,** Justin **Godart**, ancien ministre, Henry **Hayes**, maire de Versailles, **Lemery,** ancien Garde-des-Sceaux, Jean **Philip;** M. Henri **Guernut,** ancien Ministre; les Députés Bertrand d'**Aramon,** Lucien **Hussel**, Marius **Moutet,** ancien Ministre,Gaston **Riou;** les écrivains **Charles-Brun, Delebecque**, Maurice **Heim, P. Mabille**, R.-P. **Mariès,** Comtesse de **Masclary**, Camille **Mauclair,** Pierre **Mille**, Gabriel **Mourey...**

Un tel patronage, réuni en dehors de toute préoccupation politique, montre quelles amitiés ferventes a su mériter votre peuple héroïque et martyr, dont la civilisation millénaire est sœur de la nôtre. Il est garant de l'œuvre généreuse et constructive que nous allons entreprendre et que nous saurons réaliser.

Très prochainement, nous publierons ici-même la liste des membres du « **COMITÉ FRANCO-ARMENIIEN** » ainsi que son programme et ses statuts. Je compte, en effet, recourir fréquemment à la tribune que l'« **HARATCH** » veut bien mettre amicalement à ma disposition et vous tenir au courant de nos travaux. Au demeurant, notre activité s'est déjà manifestée et, seules, des raisons d'opportunité m'obligent à différer de vous entretenir d'une importante démarche auprès des pouvoirs publics...

Je veux terminer ce message par un cri d'espérance et de foi dans les destins de l'Arménie : son histoire n'est-elle pas une perpétuelle résurrection et ne sommes-nous pas en guerre pour rendre leur indépendance aux peuples opprimés ?

Redisons, comme une prophétie, les vers de votre poête, BECHIKTACHELIAN : « **Que des cendres de nos antiques héros naissent des héritiers dignes d'eux, pour donner à notre peuple une vie nouvelle !** » Ces braves, ils sont présents sous les drapeaux de France et l'heure de la justice sonnera à l'horloge de Dieu.

André FAILLET

ՖԻՆԼԱՆՏԱԿԱՆ ԺԱՄԱՍ

## Ռուսերը նորէն պարտուեցան

Ֆինլանտական աղբիւրէ կը հաղորդեն թէ եռ առնուած է Սալլա քաղաքը, [illegible]

[illegible]

